Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՀՈԿՏԵՄԲԵՐ **20** 1961






## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։*

## СОДЕРЖАНИЕ








**Адрес редакции—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 60, тел. 2-52-78.**





# ՍՄԿՊ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

## ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

*1961 թվականի հոկտեմբերի 17-ը երկար ու երկար տարիներ վառ կմնա սովետական ժողովրդի հիշողության մեջ։ Այդ օրը տեղի ունեցավ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի բացումը, որը սովետական ժողովրդի համար դարձավ բերկրալի տոն։*

*Մեր երկրի աշխատավորները խոր երախտագիտությամբ ու սիրով ՍՄԿՊ XXII համագումարը անվանեցին կոմունիզմ կառուցողների համագումար, որը քննարկեց և ընդունեց կոմունիզմի կառուցման մեծ Ծրագիրը։ Սկսելով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը, ՍՄԿՊ Կենտկո-*

մի Առաջին քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչովը ասում է, որ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարից հետո անցած վեց տարիները մեր պարտիայի, սովետական ժողովրդի, ամբողջ մարդկության համար ունեցան բացառիկ, կարելի է ասել, համաշխարհային պատմական նշանակություն։ Սովետական Հայրենիքը թևակոխեց կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը՝ մեծ աշխատանքների ամբողջ լայն ճակատով։ Սովետական Միության էկոնոմիկան և կուլտուրան շեշտակի վերելք են ապրում։ Հաջողությամբ է կատարվում յոթնամյա պլանը՝ մեր Հայրենիքի արտադրողական ուժերի հզոր զարգացման պլանը։

Սոցիալիզմը հաստատվել է ամբողջ համաշխարհային սոցիալիստական համագործակցության շրջանակներում։ Անցած տարիների կարևորագույն իրադարձությունները մեր ժամանակների գլխավոր օրինաչափության արտահայտությունն էին. սրընթացորեն տեղի էր ունենում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կենսական ուժերի աճման և ամրապնդման պրոցեսը։

Կյանքը լիովին հաստատեց պարտիայի տեսական հետևությունների ու քաղաքական





կուրսի, նրա գլխավոր գծի ճշտությունը։ Սովետական Միության կոմունիստների տասը միլիոնանոց պարտիան իր XXII համագումարն է եկել միասնական ու համախմբված, անխզելիորեն կապված սովետական ժողովրդի հետ։ Պարտիայի ու ժողովրդի միասնության, նրանց կամքի ու խոհերի կենդանի մարմնավորումն են հանդիսանում համագումարի հինգ հազար պատգամավորները՝ լենինյան մեծ պարտիայի լավագույն որդիներն ու դուստրերը։

Զեկուցման մի մեծ բաժին նվիրվում է ժամանակակից համաշխարհային իրադրության վերլուծությանը և Սովետական Միության միջազգային դրությանը։ Ն. Ս. Խրուշչովը նշում է, որ համաշխարհային երկու սոցիալական սիստեմների՝ սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների մրցությունը դարձել է համաշխարհային զարգացման առանցքը, հիմքը ժամանակակից պատմական էտապում։ Հասարակական զարգացման մեջ ավելի ու ավելի հստակորեն դրսևորվեցին երկու գծեր, պատմական երկու տենդենցներ։ Մեկը սոցիալական առաջադիմության, խաղաղության և ստեղծարարության գիծն է, մյուսը՝ ռեակցիայի, հարստահարության և պատերազմի գիծը։

Անշեղորեն վարելով խաղաղության քա-

ղաքականություն, մենք չէինք մոռանում պատերազմի սպառնալիքը իմպերիալիստների կողմից։ Այն փաստը, որ պատերազմը հաջողվեց կանխել և սովետական մարդիկ, մյուս երկրների ժողովուրդները կարողացան վայելել խաղաղ կյանքի բարիքները, պետք է դիտել որպես Սովետական պետության հզորությունը մեծացնելու, լենինյան արտաքին քաղաքականությունը կենսագործելու ուղղությամբ պարտիայի, նրա Կենտրոնական Կոմիտեի գործունեության գլխավոր արդյունքը, սոցիալիզմի երկրների եղբայրական պարտիաների գործունեության, բոլոր երկրների խաղաղասեր ուժերի ակտիվացման արդյունքը։

Իրադարձությունները ցույց են տալիս, որ մեր պարտիայի XX համագումարում մշակված կուրսը ճիշտ էր, ճշմարիտ։ Զեկուցողը բնութագրում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի պատմական զարգացման անցած էտապի առանձնահատկությունները, որի էկոնոմիկան շարունակում է զարգանալ անհամեմատ ավելի բարձր տեմպերով, քան կապիտալիզմի էկոնոմիկան։ Սոցիալիստական երկրները 1960 թվականին արդյունաբերական արտադրության ծավալը 1937 թվականի համեմատությամբ մե-



ծացրին 6,8 անգամ, մինչդեռ կապիտալիստական երկրները՝ 2,5 անգամից էլ պակաս։ Համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ սոցիալիզմի երկրների բաժինը, որը 1955 թվականին կազմում էր 27 տոկոս, 1960 թվականին կազմեց մոտավորապես 36 տոկոս։

Ապա Ն. Ս. Խրուշչովը խոսում է սոցիալիստական երկրների եղբայրական մերձեցման պրոցեսի, նրանց քաղաքական ու տնտեսական կոնսոլիդացիայի, արտադրական ուղղակի համագործակցության մասին։ Այժմ գլխավորն է, անշեղորեն զարգացնելով սոցիալիստական բոլոր երկրների և յուրաքանչյուր երկրի էկոնոմիկան, հասնել կապիտալիստականի հանդեպ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գերակշռության՝ արտադրության բացարձակ ծավալով։ Դա կլինի սոցիալիզմի պատմական մեծ հաղթանակը։

Կանգ առնելով կապիտալիզմի երկրների դրության վրա, զեկուցողը նշում է հակասությունների հետագա սրումը ինչպես այդ երկրների ներսում, այնպես էլ նրանց միջև։ Կապիտալիզմի հետագա նեխման ընդհանուր տենդենցը շարունակում էր գործել անողոք ուժով։ Նա խոսում է սպառազինությունների

մրցավազքի վրա ՆԱՏՕ-ի տերությունների
վիթխարի ծախսերի մասին, մասսայական
գործազրկության, կապիտալիստական աշ-
խարհի ներսում ուժերի հարաբերակցության
լուրջ փոփոխությունների մասին։ Խոշոր հա-
կասություններ են ԱՄՆ-ին բաժանում Ան-
գլիայից և իմպերիալիստական մյուս պե-
տություններից, դրանք դրսևորվում են թե
ՆԱՏՕ-ում և թե ագրեսիվ մյուս բլոկներում։
ԱՄՆ-ի իմպերիալիստները հանդես են գա-
լիս արևմտագերմանական միլիտարիստների
և ռևանշիստների հետ դաշինք կնքած, ըս-
պառնալով ժողովուրդների խաղաղությանը
և անվտանգությանը։

Զեկուցման մեջ մեծ ուշադրություն է նը-
վիրվում գաղութային սիստեմի մնացորդնե-
րի վերացմանը, կապիտալի երկրների աշ-
խատավորների կողմից իրենց տնտեսական
և սոցիալական իրավունքների համար մղ-
վող պայքարին, կոմունիստական պարտիա-
ների գործունեությանը։ Նոր ագրեսիայի և
պատերազմի նախապատրաստման դեմ սո-
ցիալիզմի երկրների ու բոլոր խաղաղասեր
ուժերի պայքարը կազմում է արդի համաշ-
խարհային քաղաքականության գլխավոր բո-
վանդակությունը։

Անցնելով միջազգային պրոբլեմներին,



որոնք պահանջում են անհապաղ լուծում,
Ն. Ս. Խրուշչովը նշում է, որ մեր պարտիա-
յի արտաքին քաղաքական գործունեության
կարևորագույն բաղկացուցիչ մասը հանդի-
սանում է ընդհանուր և լրիվ զինաթափման
համար մղվող պայքարը։ Զինաթափման
պրոբլեմը շոշափում է յուրաքանչյուր ժո-
ղովրդի և ամբողջ մարդկության արմատական
շահերը։ Եվ երբ այն լուծվի, կվերանա մի-
ջուկային զենքի, հետևաբար նաև նրա ար-
տադրության ու փորձարկումների ամեն մի
անհրաժեշտություն։

Խաղաղության պահպանման և ամրա-
պնդման համար խոշորագույն նշանակու-
թյուն ունի երկրորդ համաշխարհային պա-
տերազմի մնացորդների վերացման պրոբ-
լեմը։ Չի կարելի հաշտվել, որ հիտլերյան
զավթիչների դեմ տարած հաղթանակից 16
տարի հետո դեռևս ավարտված չէ Գերմա-
նիայի հետ խաղաղ կարգավորումը։ Մենք
գտնում էինք և գտնում ենք, որ հաշտության
պայմանագիրը, ամրապնդելով Պոտսդամի
համաձայնագրով որոշված գերմանական
սահմանները, կկաշկանդի ռևանշիստների
ձեռքերը և կվերացնի նրանց սերը դեպի ա-
վանտյուրաները։ Մենք այսօր էլ պատրաստ
ենք արևմտյան տերությունների հետ միա-
սին որոնելու փոխադարձաբար ընդունելի և

համաձայնեցված լուծում բանակցությունների միջոցով։

Զեկուցողն ընդգծում է, որ միջազգային իրադրության բարելավման ուղին մենք տեսնում ենք բոլոր երկրների հետ գործարար հարաբերությունների հետագա զարգացման մեջ։ Արդի պայմաններում բացվել է այն ամբողջ ժամանակաշրջանում խաղաղ գոյակցության հասնելու հեռանկար, որի ընթացքում պետք է իրենց լուծումը գտնեն այժմ աշխարհը բաժանող սոցիալական և քաղաքական պրոբլեմները։ Գործը հանգում է այն բանին, որ դեռ մինչև աշխարհում սոցիալիզմի լիակատար հաղթանակը, աշխարհի մի մասում կապիտալիզմի պահպանման պայմաններում, առաջ է գալիս հասարակության կյանքից համաշխարհային պատերազմը բացառելու ռեալ հնարավորություն։

Կյանքն ապացուցեց, որ տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության՝ մեծ Լենինի առաջ քաշած սկզբունքը խաղաղությունը պահպանելու և ընդհանուր բնաջնջող պատերազմը կանխելու ուղին է։ Մենք մեզանից կախված ամեն ինչ արել ենք և կանենք, որպեսզի ամբողջ աշխարհում հաղթանակ տանեն խաղաղ գո-



յակցությունը և խաղաղ տնտեսական մրցությունը։

Զեկուցման հաջորդ բաժինը նվիրվում է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի հիմնական խնդիրների կատարման՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ՍՍՌՄ-ի տնտեսական հզորության հետագա ամրապնդման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, ժողովրդի նյութական և հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարման համար մղվող պայքարում պարտիայի գործունեությանը։

Ն. Ս. Խրուշչովը ասում է, որ XX համագումարից հետո, վեց տարվա ընթացքում արդյունաբերական արտադրանքի թողարկումը կաճի գրեթե 80 տոկոսով։ Ժամանակակից ինդուստրիայի բազայի վրա արագորեն զարգանում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը։

Հոգ տանելով երկրի տնտեսական հզորության վերելքի մասին, պարտիան մշտապես հիշում է նրա պաշտպանունակությունը ամրապնդելու անհրաժեշտությունը։ Լիովին ավարտված է Սովետական Բանակի վերազինումը հրթիռա-միջուկային տեխնիկայով։ Այժմ իմպերիալիստները արդեն չեն կարո-

ղանա անպատիժ կերպով պատերազմական շանտաժի դիմել խաղաղասեր երկրների նկատմամբ։ Կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի ձեռքում ատոմային և ջրածնային զենքը հուսալիորեն ծառայում է խաղաղության գործին։

Զեկուցման մեջ բնութագրվում են որակական այն լուրջ փոփոխությունները, որոնք XX համագումարից հետո տեղի են ունեցել արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի մեջ։ 1956—1961 թվականներին ժողովրդական տնտեսության մեջ պետական կապիտալ ներդրումները կազմել են 156 միլիարդ ռուբլի։ Դա ավելի է, քան ներդրված էր Սովետական իշխանության բոլոր տարիների ընթացքում մինչև պարտիայի XX համագումարը։ Շահագործման է հանձնվել մոտ վեց հազար պետական խոշոր ձեռնարկություն։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում կարևոր էտապ է հանդիսանում XXI համագումարի կողմից ընդունված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը։ Յոթնամյա պլանով առաջին երեք տարում նախատեսվում էր արդյունաբերական արտադրանքի 8,3 տոկոս միջին տարեկան աճ։ Երեք տարում այն փաստորեն կկազմի տասը տոկոս։ Յոթնամյա պլանի կատարումը մեր Հայրենիքին դուրս կբերի մի այնպիսի բնագիծ, ուր արդեն քիչ ժամանակ կպահանջվի տնտեսական տեսակետից Միացյալ Նահանգներից անցնելու համար։

Հաշվետու ժամանակաշրջանում պարտիայի առանձնահատուկ ուշադրությունն են գրավել գյուղատնտեսության զարգացման հարցերը։ Անցած հնգամյակում գյուղատնտեսության համախառն արտադրանքը նախորդ հնգամյակի համեմատությամբ աճեց 43 տոկոսով։ Մեծ չափով ավելացավ հացահատիկի, մսի, կաթի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն գյուղի բոլոր աշխատավորների ջանքերն ուղղում էր հացահատիկի՝ որպես գյուղատնտեսության զարգացման հիմքի, արտադրության ավելացմանը։ Ժողովրդին ի սպաս է դրվել 41,8 միլիոն հեկտար նոր հող։ Խոպան հողերը այժմ տալիս են երկրում հացահատիկի բոլոր մթերումների ավելի քան 40 տոկոսը։

Գյուղատնտեսության զագացման ամենաանհետաձգելի պրոբլեմների մեջ առանձնահատուկ տեղ են գրավում անասնապահության վերելքի հարցերը։

Գյուղատնտեսության բնագավառում հաջողությունները անվիճելի են և նշանակալից, նշում է Ն. Ս. Խրուշչովը։ Սակայն հարց է ծագում՝ ինչո՞ւ մեզանում դեռևս քիչ են որոշ մթերքներ, առանձնապես միսը, ինչո՞ւ ընդհանուր լուրջ նվաճումներով հանդերձ՝ մենք քիչ դժվարությունների չենք հանդիպում բնակչությանը անասնապահական մթերքներ մատակարարելու գործում։

Դա ամենից առաջ բացատրվում է նրանով, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի տեմպերը դեռևս ետ են մնում արդյունաբերության զարգացման տեմպերից և բնակչության հարաճուն պահանջմունքներից։ Սրանից բխում է, որ միշտ հարկավոր է ուշադրության կենտրոնում պահել գյուղատնտեսության հարցերը, ապահովել նրա զարգացման այնպիսի տեմպեր, որ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը միշտ գերազանցի պահանջարկը։

Այս տարի անցյալ տարվա համեմատությամբ ավելացավ հացահատիկի համախառն բերքը։ Առ 15-ը հոկտեմբերի գնված է 3 միլիարդ 86 միլիոն փութ հացահատիկ, կամ 354 միլիոն փթով ավելի, քան 1960 թվականի նույն ժամանակամիջոցում։ Իսկ ընդամենը այս տարի պետությունը կգնի մոտավորապես 3 միլիարդ 300 միլիոն փութ հացահատիկ, 450 միլիոն փթով ավելի, քան գնվել էր անցյալ տարի։ Դա պարտիայի և ժողովրդի մեծ հաղթանակն է։

Ինչ վերաբերում է անասնապահությանը, ապա այստեղ ևս որոշ հաջողություններ են ձեռք բերվել։ Ավելացել է խոշոր եղջերավոր անասունների, խոզերի, ոչխարների գլխաքանակը։ Մեծացել են անասնապահական մթերքների արտադրությունն ու գնումները։

Մեր ռեզերվները վիթխարի են։ Դրանք թույլ են տալիս առաջիկա տարիներին, ինչպես այդ նախատեսված է Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումներում, հացահատիկի գնումները հասցնել տարեկան 4 միլիարդ 200 միլիոն փթի, մսինը՝ 13 միլիոն տոննայի, կաթինը՝ 50 միլիոն տոննայի։ Գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքը ամբողջ պարտիայի, ամբողջ ժողովրդի գործն է։ Դա կոմունիզմի այն բնագիծն է, որ մենք պետք է նվաճենք սովետական հասարակարգի ողջ հզորությամբ։

Այնուհետև Ն. Ս. Խրուշչովը կանգ է առնում ժողովրդի բարեկեցության բարձրաց-

ման հարցերի վրա։ Սովետական Միությունում ազգային եկամտի երեք քառորդը գործադրվում է աշխատավորների անձնական պահանջմունքները բավարարելու համար։ Ավարտվում է բանվորների և ծառայողների աշխատավարձի կարգավորումը։ Առաջիկա տարիներին աշխատանքի վարձատրման նոր պայմաններ կմտցվեն ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ։ Նախատեսված է բարձրացնել ինտելիգենցիայի այնպիսի բազմամարդ ջոկատների աշխատավարձը, ինչպիսիք են ուսուցիչները և բժիշկները։ Յոթնամյակի մնացած տարիներին նվազագույն աշխատավարձը կհասցվի 50—60 ռուբլու։ Կբարձրանան միջակ վարձատրվող բանվորների և ծառայողների դրույքներն ու ռոճիկները, 1965 թվականի վերջերին մեզ մոտ բնակչությունից գանձվող ոչ մի հարկ չի լինի։

Սովետական Միությունում վերջին հինգ տարում ավելի շատ տներ են կառուցվել, քան նախորդ 15 տարում։ Նոր բնակարան է ստացել մոտ 50 միլիոն մարդ՝ ամբողջ բնակչության գրեթե քառորդը։ Բնակարանային շինարարության ծավալով և տեմպերով Սովետական Միությունը աշխարհում գրավում է առաջին տեղը։ Յոթնամյակի



մնացած չորս տարում պետք է կառուցվի մոտ 400 միլիոն քառակուսի մետր բնակելի մակերես, կամ 1,6 անգամ ավելի, քան չորրորդ և հինգերորդ հնգամյակներում միասին վերցրած։ Ավելի քան չորս միլիոն տուն կկառուցվի գյուղական վայրերում։

Մենք իրավամբ կարող ենք հպարտանալ, որ սովետական հասարակությունը դարձել է աշխարհի ամենակրթված հասարակությունը, իսկ սովետական գիտությունը առաջավոր դիրքեր է գրավել գիտելիքների կարևորագույն բնագավառներում։ Իրենց օրրանը՝ երկիրը առաջինը խիզախեցին թողնել և դեպի տիեզերք հաղթական թռիչքներ կատարեցին Սովետական Միության քաղաքացիներ Յու. Ա. Գագարինը և Գ. Ս. Տիտովը, որոնք պարտիայի XXII համագումարի պատգամավորներ են։

Զեկուցման մեջ խոսվում է սոցիալիստական արտադրական և հասարակական մյուս հարաբերությունների զարգացման ու կատարելագործման մասին։ Մեր պարտիան դրանումն է տեսնում կոմունիստական հասարակական հարաբերությունների՝ ազատ համակողմանիորեն զարգացած և բարձր գիտակից մարդկանց հարաբերությունների ամենակատարյալ տիպին՝ բարեկամության

ու ընկերականության վրա հիմնված հարաբերություններին անցնելու հիմնական ուղին:

Այնուհետև Ն. Ս. Խրուշչովը խոսում է պարտիայի՝ կոմունիզմի հաղթանակի համար պայքարի կազմակերպչի մասին: Մեր մեծ հաջողությունները, ընդգծվում է զեկուցման մեջ, ձեռք են բերվել պարտիայի լենինյան գլխավոր գծի հաստատակամ և հետևողական կենսագործման շնորհիվ, մի գիծ, որն իր խորը արտահայտությունը գտավ XX համագումարի պատմական որոշումներում: XX համագումարի քաղաքական գիծը լիակատար հաղթանակ տարավ: Պարտիան էլ ավելի ամրապնդեց իր կապերը ժողովրդի հետ և, հենվելով նրա հզոր եռանդի վրա, էլ ավելի վեհացրեց Սովետական Միությունը:

Կանգ առնելով անհատի պաշտամունքի հետևանքները հաղթահարելու և պարտիական կյանքի լենինյան նորմաների վերականգնման հարցերի վրա, Ն. Ս. Խրուշչովը նշում է, որ XX համագումարի նախօրյակին հարցը դրված էր այսպես. կամ պարտիան բացահայտորեն, լենինաբար կդատապարտի Ի. Վ. Ստալինի անձնավորության պաշտամունքի ժամանակաշրջանում թույլ տրված սխալներն ու աղավաղումները, կմերժի պարտիական ու պետական ղեկավարման



այն մեթոդները, որոնք արգելակ դարձան առաջընթացի համար, կամ պարտիայի մեջ գերակշռություն ձեռք կբերեն այն ուժերը, որոնք կառչում են հնից, դիմադրում են այն ամենին, ինչ նոր է, ստեղծագործական:

Հետևելով լենինյան պատգամներին, խորապես գիտակցելով պատասխանատվությունը պարտիայի ու ժողովրդի հանդեպ, Կենտրոնական Կոմիտեն որոշեց ճշմարտությունը ասել անհատի պաշտամունքի շրջանում իշխանության չարաշահումների մասին: Դա ճիշտ որոշում էր: Դա վիթխարի նշանակություն ունեցավ պարտիայի ճակատագրի համար, կոմունիզմի կառուցման համար: XX համագումարում պարտիան քննադատության ենթարկեց անհատի պաշտամունքը: Կատարելով համագումարի որոշումները, նա հաղթահարեց խեղաթյուրումներն ու սխալները: Դա խիզախ որոշում էր: Այն հանդիսացավ մեր պարտիայի, նրա Կենտրոնական Կոմիտեի քաղաքական հասունության ատեստատը:

Պարտիայի լենինյան կուրսի դեմ հանդես եկավ ֆրակցիոն հակապարտիական խումբը: Նրա մեջ մտնում էին Մոլոտովը, Կագանովիչը, Մալենկովը և Վորոշիլովը, որոնք հենց իրենք անձնապես պատասխանատու

են անհատի պաշտամունքի շրջանում կադրերի դեմ մասսայական բազմաթիվ ռեպրեսիաների և այդօրինակ այլ երևույթների համար։ Երբ պարտիան պայքար ծավալեց պարտիական ու պետական կյանքի լենինյան նորմաների վերականգնման համար, այդ ֆրակցիոն խումբը ակտիվացրեց իր հակապարտիական քայքայիչ գործունեությունը։ Այն ընդլայնվեց Բուլգանինի, Պերվուխինի և Սաբուրովի հաշվին, նրանց հարեց նաև Շեպիլովը։ Ֆրակցիոներներն անցան բացահայտ գրոհի, ձգտելով փոխել քաղաքականությունը պարտիայի ներսում և երկրում, քաղաքականություն, որ նշել էր պարտիայի XX համագումարը։

Բայց ֆարկցիոներների հաշիվները իդերև ելան։ Կենտրոնական Կոմիտեի 1957 թվականի հունիսին տեղի ունեցած պլենումը վճռականորեն մերկացրեց և գաղափարապես ջախջախեց հակապարտիական խմբին, ցուցադրելով քաղաքական հասունություն, կուռ միասնություն և համախմբվածություն XX համագումարի լենինյան գծի հիման վրա։ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումներին միահամուռ հավանություն տվեցին մեր ամբողջ պարտիան, ամբողջ սովետական ժողովուրդը։



Ն. Ս. Խրուշչովը այնուհետև նշում է, որ ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականության բոլոր հարցերը այժմ պարտիայի ներսում քննարկվում են կոլեկտիվորեն։ Դա էլ հենց լենինյան սկզբունքների կենսագործումն է։

Ներպարտիական դեմոկրատիայի զարգացումը, տեղական պարտիական օրգանների իրավունքների ընդլայնումը և նրանց դերի բարձրացումը, կոլեկտիվ ղեկավարության սկզբունքի պահպանումը պարտիային դարձրել են էլ ավելի մարտունակ, ամրապնդել են նրա կապերը մասսաների հետ։ Ժողովրդի հետ պարտիայի անխզելի կապը ակնբախորեն դրսևորվում է պարտիայի շարքերի աճի, պարտիայի մեջ թարմ ուժերի մշտական հոսանքի մեջ։

Հաշվետու ժամանակաշրջանում պարտիայի թվական կազմը աճել է երկուս ու կես միլիոնով։ Եթե XX համագումարի պահին պարտիայի շարքերում կար 7.215.505 կոմունիստ, ապա XXII համագումարի պահին (առ 1-ը հոկտեմբերի 1961 թվականի) կոմունիստների թիվը հասել է 9.716.005-ի։

Այնուհետև Ն. Ս. Խրուշչովը կանգ է առնում պարտիայի կազմակերպչական աշխատանքի և կադրերի դաստիարակության վրա,

հասարակական գործունեությանը լայն մասսաների ակտիվ մասնակցության վրա, որը հանդիսանում է նոր հաջողությունների բանալին։

Զեկուցման մեջ զգալի տեղ է տրվում պարտիայի հետ ընթացող՝ աշխատավորների մասսայական կազմակերպություններին՝ Սովետներին, արհեստակցական միություններին, կոմերիտմիությանը։

Այնուհետև զեկուցման մեջ խոսվում է պարտիայի գաղափարական գործունեության մասին։ Գաղափարական աշխատանքում այժմ առաջին պլանում դրվում է ՍՄԿՊ նոր Ծրագիրը աշխատավորներին խորապես պարզաբանելու խնդիրը, որը պարտիային և ամբողջ ժողովրդին զինում է կոմունիզմի լիակատար հաղթանակի համար պայքարի մեծ պլանով։ Մեր նոր Ծրագիրը մասսաներին կոմունիզմի ոգով դաստիարակելու հիմքն է։

Կոմունիզմի կառուցման համար պահանջվում են ժողովրդի, տառացիորեն յուրաքանչյուր սովետական մարդու աշխատանքային մեծ ջանքերը։ Մարդուն աշխատանքային գործունեության նախապատրաստելու, մարդկանց աշխատանքային կոփումը, դեպի աշխատանքը սեր և հարգանք դաստիարակելը՝ որպես կենսական առաջին պահանջ, կազ-



մում են կոմունիստական դաստիարակության ամբողջ աշխատանքի ուղնուծուծը։

Նոր մարդու դաստիարակումը բարդ ու երկարատև պրոցես է։ Անհնարին է մարդկանց մեխանիկորեն կապիտալիզմի թագավորությունից փոխադրել կոմունիզմի թագավորություն։ Անհնարին է կոմունիզմ տանել կապիտալիստական նախապաշարմունքներից մամռակալած մարդուն։ Հարկավոր է նախ հոգ տանել, որ նա ազատված լինի անցյալի բեռից։

Կոմունիստական շինարարության շահերը պահանջում են, որ կոմունիստական դաստիարակության հարցերը գտնվեն յուրաքանչյուր պարտիական կազմակերպության ուշադրության և գործունեության կենտրոնում։

Կոմունիստների, մարքսիստ-լենինյանների մեծ բանակը, վերջում ասում է Ն. Ս. Խրուշչովը, հանդես է գալիս որպես ժողովուրդների ավանգարդ՝ խաղաղության ու սոցիալական առաջադիմության, պայծառ ապագայի՝ կոմունիզմի համար մղվող պայքարում։ Կոմունիզմի մեծ դրոշի ներքո կհավաքվեն և կհամախմբվեն նորանոր միլիոնավոր մարդիկ։ Առաջադիմության գործը, կոմունիզմի գործը կհաղթանակի։

# 11 ՀԱԶԱՐ ԲՆԱԿԱՐԱՆԻ ՀԱՄԱՐ

*Մեր պարտիան իր գործունեության ամբողջ իմաստը տեսնում է ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու, սովետական մարդկանց նյութական և հոգևոր պահանջները զարգացնելու ու ավելի լրիվ բավարարելու մեջ։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ

Մեր ռեսպուբլիկայում բուռն թափով ծավալվում է բնակարանային շինարարությունը։ Անցած ժամանակաշրջանում աշխատավորների հմուտ ձեռքերով հիմնովին վերափոխվել են մեր քաղաքներն ու գյուղերը։ Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երևանը դարձել է խոշոր արդյունաբերական և կուլտուրական կենտրոն։ Ավելի գեղեցիկ կդառնան մեր քաղաքներն ու գյուղերը մոտակա տարիներին։

Բնակարանային շինարարության վիթխարի տեմպեր է նախատեսվում առաջիկա տարիներին։ Ռեսպուբլիկայի ամեն մի բնակիչ 1965 թվականին միջին հաշվով կապահովվի 9,7 քառակուսի մետր բնակելի տարածությամբ, 1970 թվականին՝ 13,5 քառակուսի մետրով և 1980 թվականին՝ 16,5 քառակուսի մետրով։



Այդպիսի հսկայական շինարարական աշխատանք կատարելու համար անհրաժեշտ կլինի հետագայում ստեղծել էլ ավելի հզոր ինդուստրիալ բազա։

Երևանում արդեն սկսվել է այդպիսի մի օբյեկտի՝ տնաշինարարական կոմբինատի կառուցումը, որի հզորությունը տարեկան կազմում է 70 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Յոթնամյակի վերջին տարում ռեսպուբլիկայում այդպիսի կոմբինատների հզորությունը կհասնի 245 հազար քառակուսի մետր բնակելի տարածության։ Մոտակա տարիներին շահագործման կհանձնվի նաև Արթիկի տուֆաբետոնային բլոկների գործարանը, որը տարեկան կարտադրի 250 հազար խորանարդ մետր խոշոր բլոկներ։ Այդ գործարանի արտադրանքը ևս կօգտագործվի բնակարանային շինարարության համար։

Եթե 1926 թվականին Երևանն ուներ ընդամենը 280—290 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որի մեծ մասը կառուցված էր կավից, ապա այժմ յուրաքանչյուր երկու տարին մեկ շահագործման է հանձնվում մոտավորապես այնքան բնակելի տարածություն, որքան նա ուներ 1926 թվականին։

Սովետական կարգերի հաստատումից

հետո Հայաստանում բուռն թափ ստացավ բնակարանային շինարարությունը։ 1921 թվականից մինչև ընթացիկ յոթնամյակի սկիզբը մեր ռեսպուբլիկայում կառուցվել և շահագործման են հանձնվել մոտավորապես երեք միլիոն ընդհանուր մակերեսով բնակելի տներ։

Ընթացիկ յոթնամյակում նախատեսվում է կառուցել ավելի քան չորս միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տարածություն, կամ մեկ միլիոն քառակուսի մետրով ավելի, քան կառուցվել է նախորդ 38 տարիների ընթացքում։

Այս տարի նախատեսված է կառուցել և շահագործման հանձնել 11 հազար բնակարան կամ 341 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, 100 հազարով ավելի, քան 1960 թվականին։ 11 հազար ընտանիք կստանան նոր, գեղեցիկ և հարմարավետ բնակարաններ։

Միայն Երևան քաղաքում շահագործման կհանձնվի 5.400 բնակարան, որոնց մեծ մասը կառուցվում է Հրազդանի մեծ կամուրջի աջ ափին։ Շահումյանի շրջանի այս թաղամասը շինարարներն անվանել են Երևանյան «Չերյոմուշկա»։ Քաղաքի այս շրջանում նախատեսված է կառուցել 80 հազարանոց բնակելի թաղամաս իր դպրոցներով,



մանկական հիմնարկներով, կինո-թատրոններով, խանութներով և կոմունալ սպասարկման բազմաթիվ ձեռնարկություններով։

Վերակառուցվում են մայրաքաղաքի բոլոր փողոցներն ու թաղամասերը։

Ծաղկում և բարգավաճում է Լենինական քաղաքը։ Հիմնովին փոխվել է նրա տեսքը վերջին ժամանակներում։ Ամեն տարի շահագործման է հանձնվելու 20—25 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, կամ ավելի քան 800 բնակարան։ Քաղաքի հյուսիսային մասում մի հոյակապ բնակելի թաղամաս է կառուցվում 8 հազար բնակչի համար, որտեղ արդեն կառուցվում են դպրոցներ, մանկական հիմնարկներ, կինոթատրոն և կոմունալ սպասարկման ձեռնարկություններ։

Արագ թափով զարգանում է նաև Կիրովականը, որտեղ Ացետատային մետաքսի գործարանի մոտ կառուցվում է նրա բնակելի թաղամասը։ Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի մոտ տարածվել է քիմիագործների նորակառույց և բարեկարգ թաղամասը։ Ամեն տարի 20—22 հազար քմ բնակելի տարածություն է շահագործման հանձնվում Կիրովական քաղաքում։

Տարեցտարի աճում են ռեսպուբլիկայի բնակարանային շինարարության պլանները,

որոնց իրականացման համար պահանջվում են մեծ քանակությամբ բանվորական ուժ և նյութատեխնիկական միջոցներ, այդ պատճառով էլ ինժեներական միտքն այժմ աշխատում է այն ուղղությամբ, թե կառուցման ի՞նչ նոր պրոգրեսիվ ձևեր ստեղծել, որոնք հնարավորություն կտան կրճատել շինանյութերի ծախսը, արագացնել շինարարության ընթացքը և իջեցնել ինքնարժեքը։

Այդ որոնումներն արդեն բերում են ցանկալի արդյունքներ։ Բնակարանային շինարարության մեջ հավաքովի կոնստրուկցիաների և էլեմենտների կիրառումը, շինարարական պրոցեսների մաքսիմալ մեքենայացումը և հավաքայնության բարձր աստիճանը ապահովում են մեր պլանների լիակատար իրականացումը։

Երևանյան «Չերյոմուշկան» կառուցապատվում է տուֆակերտ շենքերով, որոնց հավաքայնության աստիճանը բավական բարձր է։ Բնակելի շենքերի միջհարկային ծածկերը, միջնորմները, ձեղնահարկերը, կտուրները, օդանցքները, բակի պատշգամբները և այլն իրականացվում են հավաքովի երկաթ-բետոնե կոնստրուկցիաներից։

1960 թվականին Երևան քաղաքում կառուցվեց առաջին խոշորապանել տունը։ Դա մի նոր էտապ էր բնակալանային շինարա-



րության մեջ։ Այդ տիպի բնակելի տների բոլոր մասերը հավաքովի երկաթ-բետոնից են՝ սկսած պատերից, վերջացրած ծածկով։ Այստեղ հավաքովի է նաև սանիտարական հանգույցը, որը պատրաստվում է գործարանային պայմաններում և մոնտաժվում շենքի մեջ։

Բնակարանային շինարարության այս ձևը ունի մեծ առավելություններ։ Նախ՝ կրճատվում է շենքի կառուցման ժամկետը, իջնում նրա արժեքը, փոքրանում աշխատատար պրոցեսները և վերանում սեզոնայնությունը, որը հնարավորություն է տալիս շենքերը շահագործման հանձնել տարվա բոլոր ամիսներին։ Այսպիսի շենքերի ջեռուցումը իրականացվում է տաք օդի միջոցով, որը ավելի հիգիենիկ է, քան մյուս տիպի ջեռուցման սիստեմները։

1960 թվականի ընթացքում շահագործման է հանձնվել 6 խոշորապանել տուն՝ 7.700 քառակուսի մետր բնակելի տարածությամբ, իսկ 1961 թվականին նախատեսվում է շահագործման հանձնել 21 հազար քմ։

1960 թվականին Երևանում կառուցվեց էքսպերիմենտալ բնակելի տուն՝ Կ. Մարքսի անվան Պոլիտեխնիկական ինստիտուտի դոցենտ ընկ. Մամիջանյանի առաջարկով։

Այս մեթոդի էությունն այն է, որ պատի

պանելներն իրականացվում են ոչ թե երկաթ-բետոնից, այլ ուղիղ ձևի քարերից և բետոնից, պոլիգոնային պայմաններում։ Բնակարանային շինարարության այս ձևը ունի մի շարք առավելություններ։ Անհամեմատ պարզեցված է պատի պանելների պատրաստումը, քիչ է երկաթի և ցեմենտի ծախսը։ Բնակարանային շինարարության այս նոր ձևը կունենա մեծ կիրառում։ 1961 թըվականին նախատեսվում է շահագործման հանձնել 5 այդպիսի բնակելի տուն։

Արագ թափով աճում է նաև շինարարական կազմակերպությունների մեքենազինվածությունը։ Ռեսպուբլիկայում կառուցվող բնակելի շենքերի մեծ մասը ապահովված է վերամբարձ կռունկներով։ Շինարարական հրապարակներում մեծ քանակությամբ էքսկավատորներ, բուլդոզերներ և այլ մեխանիզմներ են օգտագործվում։

Հիմնովին փոխվել են շինարարական պրոցեսների կատարման ձևերը։ Բոլոր տեսակի աշխատատար պրոցեսները աստիճանաբար մեքենայացվում են, վերանում է ձեռքի աշխատանքը։ Շինարարական հրապարակը վեր է ածվում մոնտաժային հրապարակի։

Ա. ՄԿՐՏՉՅԱՆ



# ԴԻՏՈՂԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ

Երևանի էլեկտրալամպերի գործարանի կոլեկտիվը նոր հաջողություններով նշանավորեց ՍՄԿՊ XXII համագումարը։ Աշխատանքային այդ հաջողությունների մեջ իրենց տեղը ունեն նաև ագիտատորները։

Գործարանի պարտիական կազմակերպությունը, ձգտելով օգտագործել ագիտացիոն աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները, լուրջ ուշադրություն է դարձնում դիտողական ագիտացիայի վրա։ Բոլոր ցեխերում, բակերում և աչքի ընկնող տեղերում փակցված են դիտողական նյութեր, որոնք վերաբերում են առաջավոր փորձին, գործարանի, նրա առանձին ցեխերի ու տեղամասերի նվաճումներին։ Դիտողական նյութերը ագիտատորները լայնորեն օգտագործում են իրենց զրույցների ժամանակ։

Գործարանում դիտողական ագիտացիան կոնկրետ է և նպատակային։ Այն պատմում է գործարանի նվաճումների և նրա առջև

դրված խնդիրների մասին, կոչ է անում ժամկետից շուտ կատարել յոթնամյա պլանը: Այստեղ շատ ագիտատորներ, ինչպես, օրինակ, Է. Մարկոսյանը, Մ. Հովհաննիսյանը (հավաքման ցեխից), Վ. Բարսեղյանը (սպիրալների ցեխից), Ն. Բաղդիկյանը (մեխանիկական ցեխից) և շատ ուրիշներ, իրենց ագիտացիոն աշխատանքի ժամանակ լայնորեն օգտագործում են նաև դիտողական ագիտացիայի նյութերը՝ պլակատներ, դիագրամներ, նկարներ և այլն:

Գործարանի գլխավոր մուտքի մոտ հայերեն և ռուսերեն լեզուներով գրված է՝ «Մեր նշանաբանն է՝ աշխատել և ապրել կոմունիստաբար»: Մտնում ենք գործարան, և առաջին իսկ պահից զգացվում է, որ իրոք կոլեկտիվը պայքարում է այդ նպատակի համար:

Գործարանի գլխավոր ծառուղու երկու կողմերում ամրացված են ՍՄԿՊ Ծրագրից վերցված հետևյալ խոսքերը. հավատարմություն կոմունիզմի գործին, սեր դեպի սոցիալիստական Հայրենիքը, դեպի սոցիալիզմի երկրները, բարեխիղճ աշխատանք հասարակության բարօրության համար, ով չաշխատի, նա չի ուտի և այլն:

Մյուս երկու ծառուղիներում ցուցադրված են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության



7-ամյա պլանը և Սովետական Հայաստանի 40-ամյա նվաճումները պատկերող նկարներ ու դիագրամներ: Գործարանի ծառուղիներից մեկը կոչվում է «Առաջավորների ծառուղի», որտեղ ամրացված են առաջավոր բանվորների մեծադիր դիմանկարները:

«Առաջավորների ծառուղու» դիմաց բարձրանում է գործարանի «Պատվո-տախտակը», որից երբեք չեն իջնում առաջավոր բանվորներ Վ. Հակոբյանի, Հ. Հովհաննիսյանի, Ն. Տեալյակովայի և ուրիշների նկարները:

Առանձնապես լավ են ցուցադրված գործարանի աշխատանքային հաջողությունները և այն պարտավորությունները, որ ստանձնել է կոլեկտիվը: Կորպուսներից մեկի պատին ամրացված է մի մեծ տախտակ, որի վրա գեղարվեստորեն գրված են կոլեկտիվի սոցիալիստական պարտավորությունները:

Գործարանի կենտրոնական հրապարակում կանգնեցված է մի ցուցատախտակ, որի վրա գրված է. «Պետական պլանը օրենք է: Այն պետք է կատարել անթերի»: Ցուցատախտակում նշված են բոլոր ցեխերի արտադրական պլանները և նրանց կատարման տոկոսները ըստ ամիսների և եռամսյակների: Այդ միջոցը հնարավորություն է տալիս բանվորներին՝ ժամանակին իմանալու իրենց աշխատանքի արդյունքների մասին:

Ագիտատորներն իրենց զրույցներում հաճախ օգտագործում են գործարանի յոթնամյա պլանին վերաբերող ցուցադրական ստենդը, որն ազդարարում է հետևյալը. 1965 թվականին գործարանը թողարկելու է համախառն արտադրանք 273 միլիոն ռուբլու չափով՝ 1959 թվականի 45 միլիոն ռուբլու դիմաց, 1965 թվականին արտադրվելու է 83 միլիոն հատ էլեկտրալամպ՝ 1959 թվականին արտադրված 40,5 միլիոնի դիմաց։

Գործարանի ամբողջ կոլեկտիվը պայքարում է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար։ Գործարանի բոլոր ցեխերում ու տեղամասերում ամրացված է այդ մասին մի կոչ, որն ազդարարում է «Հիշի՛ր, կոլեկտիվը որոշել է պայքարել կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար»։

Եվ այժմ գործարանում 10 բրիգադա պայքարում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի պատվավոր կոչման համար։

Բոլոր ցեխերում ամրացված են ցեխերի ձեռք բերած ցուցանիշները, սոցիալիստական պարտավորության պլանները։ Ահա, օրինակ, հավաքման ցեխը։ Ցեխի պարտկազմակերպության քարտուղար ընկ. Գևորգ Շիրինյանի հետ շրջում ենք ցեխի ընդարձակ սրահում, զրուցում բանվորների հետ։ Ցեխի



կոլեկտիվի կարևոր խնդիրներից մեկը արտահայտված է կարմիր պաստառի վրա հետևյալ խոսքերով. «Խնայողության ռեժիմի կիրառումը գործարանի յուրաքանչյուր անդամի պատվի գործն է»։ Եվ իրոք, հավաքման ցեխի կոլեկտիվը այս նշանաբանով է աշխատում։ Անցյալ տարվա համեմատությամբ այս տարի հավաքման ցեխն աշխատում է խիստ խնայողությամբ։

Հավաքման ցեխում փակցված է հետևյալ լոզունգը՝ «Պայքար բարձրորակ արտադրանքի համար՝ պայքար է գործարանի մարկայի բարձրացման համար»։ Այս նշանաբանով են աշխատում 4-րդ, 8-րդ և 11-րդ բրիգադները։ Բրիգադիր Ի. Ումրշատյանը և ցեխի պարտկազմակերպության քարտուղար Գ. Շիրինյանը գովեստով են խոսում առաջավոր բանվորներ Ա. Պապիկյանի, Կ. Դալլաքյանի, Ռ. Ոսկանյանի, Վ. Խաչատրյանի և ուրիշների մասին։ Իսկ Գ. Գալստյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադան 1961 թվականի անցած ամիսներին ձեռք բերեց ավելի խոշոր նվաճումներ։ Բրիգադան միշտ հումքի խնայողություն է անում։

Ագիտատորների ջանքերով, որոնք մասսայականացրել են առաջավորների փորձը, հավաքման ցեխի կոլեկտիվը, սկսած 1961

Թվականի փետրվար ամսից, տալիս է միայն առաջին տեսակի արտադրանք։ Պայքար առաջին տեսակի արտադրանքի համար, պայքար պլանների գերակատարման համար, ահա ցեխի կոլեկտիվի միասնական աշխատանքի նպատակը։ Ցեխում ծավալված է սոցիալիստական խանդավառ մրցություն, և կոլեկտիվը պարտավորվել է տարեկան պլանից դուրս արտադրել 500.000 էլեկտրալամպ։

Նույն խանդավառությամբ են աշխատում նաև ապակյա կիսաֆաբրիկատների տեղամասի բանվորները, որոնց մեծ մասը երիտասարդներ ու ՀամԼԿԵՄ անդամներ են։ Նրանցից աչքի են ընկնում Մ. Բալոյանը, Ա. Խաչատրյանը, Ա. Աղաջանյանը և ուրիշներ։ Տեղամասի երիտասարդ բանվորները ջանք չեն խնայում իրենց առջև դրված խնդիրները պատվով կատարելու համար։ Կարմիր պաստառի վրա գրված է. «Ընկեր կոմերիտական, արդյոք որոշե՞լ ես քո տեղը յոթնամյակի կատարման համար մղվող համաժողովրդական պայքարում»։

Առաջավոր բանվորներ Ռ. Համբարձումյանը, Վ. Գրիգորյանը և շատ ու շատ ուրիշներ իրոք գտել են իրենց իսկական տեղը՝ միշտ լինել առաջավորների շարքերում և միայն տալ բարձրորակ արտադրանք։



Էլեկտրալամպերի գործարանի բոլոր ցեխերի ու տեղամասերի աշխատանքները կապված են իրար հետ, և ամբողջ կոլեկտիվը պայքարում է ձեռնարկության ռիթմիկ աշխատանքի համար։

Իսկ երբ տեղամասերից մեկում դանդաղում է աշխատանքը, իսկույն երևում է «Կայծակ» թերթը, որը բացահայտում է թերությունները։

Գործարանի բոլոր ցեխերն ու տեղամասերն ունեն իրենց պատի թերթերը, որոնցում հանդես են գալիս գործարանի նորարարները ռացիոնալիզատորական առաջարկություններով, իսկ մրցության առաջավորները պատմում են, թե ինչպես են կատարել ստանձնած պարտավորությունները։

Մեծ է դիտողական ագիտացիայի ուժը, եթե այն կապված է իրականության հետ, արտահայտում է ժամանակի շունչն ու ոգին։ Այդպիսին է Երևանի էլեկտրալամպերի գործարանում կազմակերպված դիտողական ագիտացիան, որն իր բաժինն ունի գործարանի ձեռք բերած նվաճումների մեջ։

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

—ı—

# ՆՇԱՆԱՎՈՐՈՒՄ ԵՆ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

(Թվեր և փաստեր)

*Հարազատ Կոմունիստական պարտիայի XXII համագումարը աշխատանքային նոր հաջողություններով են նշանավորում մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։*

*Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը, ժամկետից շուտ կատարելով այս տարվա 10 ամսվա արտադրական պլանները, տնտեսել է 1.300 տոննա հիմնական նյութ, 1 միլիոն 310 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 3.700 տոննա պայմանական վառելանյութ։*

*Այս տարվա տասն ամսվա արտադրական պլանները ՍՄԿՊ XXII համագումարի բացումից 7 օր շուտ կատարեց Երքաղսովետի գործկոմի Տեղարդվարչության կոշիկի անհատական պատվերների № 1 ֆաբրիկայի կոլեկտիվը։*

*Հոկտեմբերի 12-ին Երևանի էլեկտրաապարատների գործարանի կոլեկտիվը կատարեց այս տարվա*



*10 ամսվա արտադրական պլանը։ Նախատեսված 60 հազար ռուբլու փոխարեն գործարանի կոլեկտիվը տվել է 239 հազար ռուբլու արտապլանային եկամուտ։ Նույն գործարանում արտադրության մեջ ներդրվել են 11 նոր տեսակի ապարատներ։*

*Երևանի ալյումինի գործարանի կոլեկտիվը անցած 9 ամսվա պլանը կատարել է 103,6 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 3,5 տոկոսով և խնայել 4 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։*

*Հայկական ՍՍՌ Շինարարության մինիստրության № 1 տրեստի կոլեկտիվը, կատարելով այս տարվա 9 ամսվա շինարարական պլանը, ժամկետից շուտ շահագործման է հանձնել դպրոցական 3 շենք և անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ 20 հազար քառակուսի մետրով ավելի բնակելի տարածություն։*

*Երևանի կոմպրեսորների գործարանի օդահավաքիչների ցեխի կոլեկտիվը հոկտեմբերի 11-ին կատարել է անցած 10 ամսվա արտադրական պլանը և պլանից դուրս երկրին տվել 60 հազար ռուբլու արտադրանք։*

*Ժամկետից շուտ կատարելով անցած 9 ամսվա արտադրական պլանը, Երևանի «Քրոմպիկ» գործարա-*

նի կոլեկտիվը 5 տոկոսով գերակատարել է աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը և պլանից դուրս երկրին տվել տասնյակ հազար ռուբլու արժողությամբ քիմիկատներ։

Երևանի Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկան, որ իր առջև խնդիր է դրել արտադրանքի թողարկման ծավալով 1961 թվականին հասնել 1965 թվականի մակարդակին, անցած 9 ամսվա պլանը կատարել է 106,1 տոկոսով։ Ֆաբրիկայի արտադրած տրիկոտաժեղենի 83,9 տոկոսը առաջին տեսակի է։ Այստեղ պլանից ավելի է թողարկվել 41 հազար կտոր տրիկոտաժեղեն։

Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի մամլման ցեխի կոմունիստական աշխատանքի բրիգադան դեռևս հոկտեմբերի 8-ին կատարեց այս տարվա 10 ամսվա արտադրական պլանը և պլանից դուրս երկրին տվեց շուրջ 30 հազար դետալ։

Երևանի ավտոդողերի գործարանի ռացիոնալիզատորները և գյուտարարները 10 ամսում արել են ավելի քան 230 առաջարկություն, որոնցից ավելի քան 200-ը արդեն արմատավորվել է արտադրության մեջ։

Երկրին նախատեսված պլանից 10 հազար ժամացույց ավելի տվեց Երևանի ժամացույցի գործարանի կոլեկտիվը, որը ՍՄԿԿ XXII համագումարի բացման



նախօրյակին կատարել է անցած 10 ամսվա արտադրական պլանը։

Ժամկետից շուտ, հոկտեմբերի 13-ին «Արարատ» տրեստի գինեգործական գործարանների և վերամշակման կետերի կոլեկտիվները կատարեցին խաղողի մթերման տարեկան պլանը։

Երևանի լայն սպառման ապրանքների ֆաբրիկայի կոլեկտիվը, ժամկետից շուտ կատարելով այս տարվա 10 ամսվա արտադրական պլանը, լրացուցիչ կերպով երկրին տվեց 55 հազար ռուբլու արտադրանք։ Ֆաբրիկայի կոլեկտիվը պարտավորվել է դեկտեմբերի 5-ին կատարել տարեկան պլանը։

Երևանի շամպայն գինիների գործարանի կոլեկտիվը կատարել է 1961 թվականի պլանը և այժմ աշխատում է 1962 թվականի հաշվին։

Էջմիածնի շրջանի Այգեշատի կոլտնտեսականները ՍՄԿԿ XXII համագումարի բացումից 3 օր առաջ կատարեցին բամբակի հանձնման տարեկան պլանը։ Կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացել է 30 ցենտներ բամբակ։ Կոլտնտեսությունը ժամկետից շուտ է կատարել նաև խաղողի հանձնման տարեկան պլանը։

Շամշադինի շրջանի Չինարիի կոլտնտեսությունը հոկտեմբեր ամսին կատարեց ծխախոտի տերևաքաղի

տարեկան առաջադրանքը։ Նույն շրջանի Նորաշենի կոլտնտեսության № 3 բրիգադայի՝ Ասյա Աթոյանի օղակը ամեն մի հեկտարից ստացել է 112 ցենտներ եգիպտացորենի հատիկ։

Սիսիանի շրջանի Շաղաթ գյուղի կոլտնտեսությունը հոկտեմբերի առաջին տասնօրյակում կատարել է պետությանը ծխախոտի հումք վաճառելու տարեկան պլանը։ Պետությանը վաճառված է 490 ցենտներ ծխախոտի լավորակ հումք՝ նախատեսված 470-ի փոխարեն։

Ստեփանավանի Կաթնաղբյուր գյուղի Ս. Ներսիսյանի ղեկավարած բրիգադան կարտոֆիլի ամեն մի հեկտարից ստացել է 235—240 ցենտներ բերք։

Նույն շրջանի Կույբիշևի անվան կոլտնտեսության Կ. Գոդանովի ղեկավարած բրիգադան կարտոֆիլի ամեն մի հեկտարից ստացել է 250 ցենտներ բերք։

Եղեգնաձորի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները հոկտեմբեր ամսին, ՍՄԿՊ XXII համագումարի նախօրյակին պետությանը կաթ վաճառելու տարեկան պարտավորությունները կատարեցին 107,5 տոկոսով, բրդինը՝ 104 և ձվինը՝ 137 տոկոսով։

Ամասիայի շրջանի կոլտնտեսությունները հոկտեմբեր ամսվա առաջին տասնհինգօրյակում կատարեցին պետությանը կաթ, միս, ձու և բուրդ վաճառելու



1961 թվականի սոցիալիստական պարտավորությունները։ Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ պետությանն ավելի է վաճառվել միս՝ 4.911 ցենտներ, կաթ՝ 7.210 ցենտներ, բուրդ՝ 415 ցենտներ և ձու՝ 152 հազար հատ։

Երևանի շոգեքարշային դեպոյի մեքենավար Գ. Գևորգյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադան նախատեսված 100 հազար կիլոմետրի փոխարեն կատարել է 230 հազար կիլոմետր վազք։ Բրիգադան վարել է 180 ծանրաքաշ գնացք և նորմայից ավելի փոխադրել է 52 հազար տոննա բեռ։

Իջևանի շրջանի փայտամշակման գործարանի ֆաներայի ցեխի հաստոցավար Պ. Թորոսյանը այս տարվա 9 ամսում կատարել է մեկ ու կես տարվա պլան։

Ռեսպուբլիկայի սովխոզների կոլեկտիվները հոկտեմբերի 10-ին կատարեցին խաղողի և պտղի հանձնման պետական պլանները։ Անցյալ տարվա համեմատությամբ 5.500 տոննա խաղող և 4.087 տոննա պտուղ ավելի է հանձնվել։

Այս օրերին ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում նոր թափով է ծավալվում համաժողովրդական սոցիալիստական մրցությունը ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները կենսագործելու համար։

—•—

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Ազատարար Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. Լենին— *Ռևոլյուցիայի խնդիրները, Երկեր, հատոր 26, էջ 53—65, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. Լենին— *Ի՞նչ է Սովետական իշխանությունը, Երկեր, հատոր 29, էջ 295—297, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. Լենին— *Պրոլետարիատի խնդիրների մասին տվյալ ռևոլյուցիայում, Երկեր, հատոր 24, էջ 1—9, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. Լենին— *Սովետական իշխանության հերթական խնդիրները, Երկեր, հատոր 27, էջ 279—333, Հայպետհրատ, 1959։*

*Պարտիան Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի ոգեշնչող ու կազմակերպիչ։ «Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմություն» գրքից, էջ 242—302, Հայպետհրատ, 1959։*

Ն. Ս. Խրուշչով— *ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի*



*հաշվետվությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարին, զեկուցում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 18-ի և 19-ի համարներում։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 44-րդ տարեդարձը, նյութեր զեկուցումների և զրույցների համար, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1961 թվականի 19-րդ համարում։*

## 2. Վ. Ի. Լենինը Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի առաջնորդ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. Լենին— *Բոլշևիկները պետք է վերցնեն իշխանությունը, Երկեր, հատոր 26, էջ 1—4, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. Լենին— *Ռևոլյուցիայի խնդիրները, Երկեր, հատոր 26, էջ 53—65։*

Վ. Ի. Լենին— *Բանվորների և զինվորների դեպուտատների համառուսաստանյան երկրորդ համագումարը, Երկեր, հատոր 26, էջ 289—315, Հայպետհրատ, 1951։*

*Վլադիմիր Իլյիչ Լենին, Կենսագրություն, առանձին գրքով, Հայպետհրատ, 1961։*

Ն. Ս. Խրուշչով— *ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետվությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարին, տպագրված*

«Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 18-ի և 19-ի համարներում։

Ն. Ս. Խրուշչով— ՍՄԿՊ Ծրագրի նախագիծը, զեկուցում ՍՄԿՊ XXII համագումարում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 20-ի և 21-ի համարներում։

### 3. Սովետական ժողովուրդը կոմունիզմի համար մղվող պայքարում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. Խրուշչով— ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետվությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարին, զեկուցում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 18-ի և 19-ի համարներում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրությունը։

### 4. ՍՄԿՊ XXII համագումարը մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ կանխատեսումների համագումարն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. Խրուշչով— ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետվությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարին, զեկուցում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 18-ի և 19-ի համարներում։



Ն. Ս. Խրուշչով— ՍՄԿՊ Ծրագրի նախագիծը, զեկուցում ՍՄԿՊ XXII համագումարին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 20-ի և 21-ի համարներում։

Ֆ. Ռ. Կոզլով— ՍՄԿՊ Կանոնադրության փոփոխությունների մասին, զեկուցում ՍՄԿՊ XXII համագումարին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի համարում։

Ինֆորմացիոն նյութեր ՍՄԿՊ XXII համագումարի աշխատանքների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի համարներում։

### 5. Սովետական Հայաստանը Մեծ Հոկտեմբերի ծնունդն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. Լենին— Հեռագիր Հայաստանի Ռազմական ռևոլյուցիոն կոմիտեի նախագահին, Երկեր, հատոր 31, էջ 550, Հայպետհրատ, 1952։

Վ. Ի. Լենին— Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, Երկեր, հատոր 32, էջ 402—405, Հայպետհրատ, 1952։

Ն. Ս. Խրուշչով— Ճառ, արտասանած 1961 թվականի մայիսի 6-ին Երևան քաղաքում տեղի ունեցած հանդիսավոր նիստում՝ նվիրված Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակին, Հայպետհրատ, 1961։

*Յա. Ն. Զարոբյան— Զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի հանդիսավոր նիստում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համարում։*

*Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Կոնստիտուցիա (հիմնական օրենք)։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 44-րդ տարեդարձը, նյութեր զեկուցումների և զրույցների համար, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1961 թվականի 19-րդ համարում։*

*Սովետական Հայաստանի 40 տարին, բրոշյուր, Հայպետհրատ, 1960։*

*Յա. Ն. Զարոբյան— Պայքար ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի հաջող կատարման համար, ՀԿՊ XXII համագումարին Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

*Հայաստանի Կոմունիստական պարտիայի XXII համագումարի բանաձևը Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1961։*

## 7. ՍՄԿՊ XXII համագումարը նշանավորում են նոր հաջողություններով

*(Օգտագործել պարբերական մամուլում այդ թեմայի վերաբերյալ տպագրված նյութերը և տեղական այն*



*փաստերը, որոնք վերաբերում են ստանձնած պարտավորությունների անթերի կատարելուն)։*

## 8. Սովետական Միությունը պայքարում է գերմանական պրոբլեմը խաղաղ ճանապարհով լուծելու համար

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. Խրուշչով— *Ելույթ ռադիոյով և հեռուստատեսությամբ 1961 թվականի օգոստոսի 7-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 8-ի համարում։*

Ն. Ս. Խրուշչով— *Արդի համաշխարհային իրադրությունը և Սովետական Միության միջազգային դրությունը. ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 18-ի համարում։*

*Սովետական կառավարության Հայտարարությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 31-ի համարում։*

Վ. Ուլբրիխտի *ճառը ՍՄԿՊ XXII համագումարում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 22-ի համարում։*

—·—

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## ԲԱՑՎԱԾ Է

«Ագիտատորի բլոկնոտ»-ի 1962 թվականի բաժանորդագրությունը։

1 ամիսը — 15 կոպ.
6 ամիսը — 90 կոպ.
12 ամիսը — 1 ռուբ. 80 կոպ.
Մեկ համարը — 8 կոպ.։

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 20 1961 г.

ՎՖ 01071 պատվեր 544 Տպաքանակ 8213

Հանձնված է արտադրության 20/X 1961 թ.,
Ստորագրված է տպագրության 26/X 1961 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.